Պրոլետարնե՛ր բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Կ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 15 1949

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ


Եջ

ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԻԱՅԻ ԵՐԿՐՆԵՐԸ ՎԵՐԵԼՔԻ ՃԱՆԱՊԱՐՀԻՆ («Պրավդայի» օգոստոսի 16-ի առաջնորդողը) . . . 1

ՍՍՌՄ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆԸ ԶԱՐԳԱՆՈՒՄ Է ԱՆՇԵՂ ՎԵՐԵԼՔԻ ԳԾՈՎ . 12

Ագիտատորների աշխատանքի փորձից

ՀՐ. ՕՀԱՆՋԱՆՅԱՆ.— Մարիա Ռոժնևայի և Լիդիա Կոնոնենկոյի օրինակով . 24

Ա. ՓԱՆՈՍՅԱՆ.— Ագիտացիան գիշերային հերթափոխությունում . . . 31

Լ. ՂԱՐԻԲՅԱՆ.—Գործարանի ագիտպունկտը 36

Օգնություն ագիտատորներին

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ՀՆԳԱՄՅԱ ՊԼԱՆԻ ԿԵՆՍԱԳՈՐԾՈՒՄԸ (Թվեր և փաստեր) . 42

ԻՆՉ ԿԱՐԴԱԼ . . . 47

ՆՈՐ ԳՐՔԵՐ . . 50





Խմ[illegible]ության հասցեն. Երևան, Նալբանդյան 32, ՀԿ(բ)Պ [illegible] [illegible]պագանդայի և ագիտացիայի բաժին, հեռախոս՝ 2—52—78։


# ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԻԱՅԻ ԵՐԿՐՆԵՐԸ ՎԵՐԵԼՔԻ ՃԱՆԱՊԱՐՀԻՆ

Սովետական բոլոր մարդիկ խորին ուշադրությամբ և եղբայրական համակրանքով են հետևում ժողովրդական դեմոկրատիայի վերածնման ու զարգացման պատմական պրոցեսներին։ Սովետական մարդիկ ուրախանում են լեհ, բուլղար, չեխոսլովակյան, հունգար, ռումին, ալբանական ժողովուրդների հաջողություններով, որ նրանք ձեռք են բերել նոր կյանքի կառուցման ասպարեզում։ Այդ ժողովուրդների հաջողությունները վիթխարի են։

Պատերազմի և գերմանական օկուպացիայից այնքան դաժանորեն տուժած ժողովրդական դեմոկրատիայի բոլոր երկրներում արդեն գերազանցված է արդյունաբերության նախապատերազմյան մակարդակը։ Անսպառ է իրենց երկրի լիիշխան տերը դարձած աշխատավորների ստեղծարար եռանդը։ Ժողովրդական մասսաների նախաձեռնությունը բաց է անում կապիտալիստական գիշատչությունից և պորտաբուծությունից, տնտեսական ճգնաժամերից, գործազրկությունից և

աղքատությունից դեպի իսկական դեմոկրատական կարգի աճման ու ամրապնդման նորանոր հնարավորություններ:

Ժողովրդական դեմոկրատիայի պետությունները գերմանական իմպերիալիզմի դեմ Սովետական Միության տարած պատմական հաղթանակի ուղղակի ծնունդն են: Այդ հաղթանակը Արևելյան Եվրոպայի երկրներին ազատեց գերմանա-ֆաշիստական լծից, այնտեղ խարխլելով հակաժողովրդական ռեժիմների հիմքերը և այդ երկրների աշխատավորության առաջ բաց արեց դեմոկրատական զարգացման ուղին: Սովետական Միությունը ժողովրդական դեմոկրատիայի երկրների ժողովուրդներին օգնեց ամրապնդելու իրենց հաղթանակները և անկախությունը:

Ազատագրված երկրներում ժողովուրդները իշխանության գլուխ բարձրացրին իրենց լավագույն զավակներին, որոնք անկախության և ազատության համար անձնվիրաբար պայքարել էին գերմանա-ֆաշիստական զավթիչների և իրենց բուրժուազիայի միջից դուրս եկած դավաճանների դեմ:

Կոմունիստները գլխավորում էին ժողովրդական շարժումը: Կոմունիստների ղեկավարությամբ այդ բոլոր երկրներում հաստատվեց ժողովրդական դեմոկրատիայի



կարգ, որը կատարում է պրոլետարիատի դիկտատուրայի ֆունկցիաները: Հենվելով սովետական ժողովրդի հետ բարեկամության վրա, նրա աջակցության վրա, փոխ առնելով սովետական պետական շինարարության հարուստ փորձը, երիտասարդ ժողովրդական դեմոկրատիայի կառավարությունները անցկացրին խոշոր և միջակ արդյունաբերության ազգայնացում և հողային ռեֆորմ: Դրանով իսկ լիկվիդացվեց կապիտալիստների և կալվածատերերի գոյության հիմքը: Ժողովրդական դեմոկրատիայի երկրները հաղթահարելով հետպատերազմյան ժամանակաշրջանի դժվարությունները, փլուզման և ռեակցիոն տարրերի սաբոտաժի դժվարությունները, մեծ եռանդով ձեռնամուխ եղան ժողովրդական տնտեսության պատմական վերականգնման և զարգացման աշխատանքին: Արևելյան Եվրոպայի ժողովուրդներն ընթացան բոլոր իսկապես ազատ ազգերի համար ընդհանուր ուղիով, դեմոկրատիայի և սոցիալիզմի ուղիով:

Հաջող առաջընթացի, ժողովրդական դեմոկրատիան ամրապնդելու կարևորագույն պայմաններից մեկը բանվոր դասակարգի միասնությունն էր, բանվոր դասակարգի մեջ եղած իմպերիալիզմի աջ-սոցիալիստական

գործակալների լիակատար վերացումը։ Համառ և հաստատակամ պայքարի հետևանքով այդ խնդիրը հաջողությամբ լուծվեց։ Բանվոր դասակարգը ժողովրդական դեմոկրատիայի բոլոր երկրներում կազմակերպեց միասնական բանվորական պարտիաներ։ Բանվոր դասակարգի միջից պառակտումը լիկվիդացնելու, միասնական բանվորական պարտիաներ ստեղծելու այդ պատմական պրոցեսը տեղի է ունենում մարքսիզմ-լենինիզմի մեծ ուսմունքի հիման վրա։ Բանվորական պրոֆեսիոնալ շարժման միասնությունը, բանվորական և գյուղացիական երիտասարդության շարքերի միասնությունը— այս բոլորը նպաստել է ժողովրդական դեմոկրատիայի հիմունքների ամրապնդմանը։ Դեմոկրատացումը վիժեցնելու ուղղությամբ ռեակցիայի կատարած փորձերը ջախջախվեցին, իմպերիալիզմի ոտնձգությունները մերկացված և վնասազերծ են արված։

Զցանկանալով հաշտվել ստեղծված դրության հետ, իմպերիալիստները շարունակում են շանտաժի և սպառնալիքների իրենց քաղաքականությունը։ Նրանք ժողովրդական դեմոկրատիայի երկրների դեմ մոբիլիզացրել են միջազգային բանդիտիզմի բոլոր ուժերը, նրանք այդ երկրների վրա են բաց թողնում



դիվերսանտներին և Վատիկանի գործակալներին։ Նրանք կիրառում են տնտեսական բլոկադայի և ազգային խտրականության քաղաքականությունը։ Իմպերիալիստական աշխարհի պարագլուխները ժողովրդական դեմոկրատիայի երկրների վերաբերմամբ գործում են այնպես, ինչպես նրանք երեսուն տարի առաջ գործում էին երիտասարդ սովետական պետության դեմ։ Սակայն ժամանակները փոխվել են։ Այն ժամանակ սովետական երկիրը մենակ էր դեպի սոցիալիզմ տանող ճանապարհին, բայց նրա հետ էր ամբողջ աշխարհի միլիոնավոր աշխատավորների համակրանքը։ Այժմ ժողովրդական դեմոկրատիայի երկրների հետ է ո՛չ միայն ամբողջ աշխարհի աշխատավորության համակրանքը, այլև սովետական սոցիալիստական տերության ամբողջ հզորությունը։

Ժողովրդական դեմոկրատիայի երկրները գոհունակությամբ հանրագումարի են բերում իրենց հաղթանակների արդյունքները։ Այն ժամանակ, երբ կապիտալիստական աշխարհը «մարշալլյան» տապալված պատրանքների կոտրած տաշտակի առաջ ողբում է իր անհաջողությունները, ժողովրդական դեմոկրատիայի երկրները սեփական փորձով համոզվում են իրենց ընտրած ուղու ճշտության

մեջ։ Իմպերիալիստական ճնշումից, կալվածատերերի և կապիտալիստների իշխանությունից ազատագրված երկրներում բոլոր պայմանները ստեղծված են ժողովրդական տնտեսության արագ վերականգնման և անշեղ վերելքի համար։

Լիկվիդացնելով կապիտալիստների և կալվածատերերի իշխանությունը, հաղթահարելով այդ իշխանության ծնած տնտեսական քաոսը, փլուզումը, աղքատությունը, ժողովրդական դեմոկրատիայի երկրները անցել են պլանային տնտեսության, որն ապահովում է տնտեսության բոլոր ճյուղերի բազմակողմանի ու ներդաշնակ զարգացումը։

Պետական առաջին պլանները, որոնք մշակված էին կարճ՝ երկամյա և եռամյա ժամկետով, հաջողությամբ ավարտվում են, կամ թե ավարտված են։ Հունգարիայում պլանը կատարված է երկու տարում և հինգ ամսում։ Հերթն է դրված հնգամյա պլանը։ Ավարտելով եռամյա պլանը, Լեհաստանը 1950 թվից ձեռնամուխ կլինի վեցամյա պլանին։ Չեխոսլովակիան երկամյա պլանից անցել է հնգամյա պլանի։ Ժողովրդա-տնտեսական պլանները հաջողությամբ են կատարվում Բուլղարիայում և Ռումինիայում։ Ալբանիայի համար խոշոր հաջողություն է նրա ընդունած



երկամյա պլանը։ Ժողովրդական դեմոկրատիայի բոլոր երկրներում ժողովրդական տնտեսության զարգացման 1949 թվի առաջին կիսամյակի պլանները կատարված ու գերակատարված են։

Տնտեսության աճման հետ միասին անընդհատ բարելավվում է մասսաների բարեկեցությունը։ Ժողովրդական դեմոկրատիայի բոլոր երկրներում ռեալ աշխատավարձն արդեն աճել է։

Նշանակալից են նաև գյուղատնտեսության ասպարեզում ձեռք բերված հաջողությունները։ Հողային ռեֆորմը, որի հետևանքով աշխատավոր գյուղացիությունն զգաց ժողովրդական դեմոկրատիայի հաղթանակի ռեալ պտուղները, պայմաններ ստեղծեց գյուղատնտեսության արագ վերականգնման, չքավոր և միջակ գյուղացիների բարեկեցության բարձրացման համար։ Հաջողությամբ է զարգանում կոոպերատիվ շարժումը։ Դեմոկրատիայի թշնամիների դեմ մղած համառ պայքարում ամրապնդվել է բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքը։

Բանվոր դասակարգը և գյուղացիությունն իրենց միջից առաջ են քաշել նոր ուժեր։ Սոցիալիստական մրցությունը, որը ժողովրդական դեմոկրատիայի երկրների լայնագույն

  

մարդիկ սովորել են և սովորում են Սովետական Միության բանվորներից ու կոլխոզնիկներից, անշեղորեն բարձրացնում է աշխատանքի արտադրողականությունը։

Ժողովրդական դեմոկրատիայի երկրներում մեծ հաջողություններ են ձեռք բերված նաև կուլտուրական շինարարության ասպարեզում։ Բանվորական և գյուղացիական երիտասարդությունը հեղեղել է դպրոցներն ու համալսարանները։ Ստեղծվում է կապիտալիզմի նեխվածությունից, անշարժությունից և բուրժուական Եվրոպայի հանդեպ ստորաքարշությունից զերծ նոր ինտելիգենցիա։

Այս է ժողովրդական դեմոկրատիայի երկրների ընդհանուր պատկերը և դա ցույց է տալիս այն վստահությունը, որով ժողովուրդները, փորձ կուտակելով, նայում են առաջ՝ իրենց ապագային։

Ժողովրդական դեմոկրատիայի երկրների տնտեսական և կուլտուրական վերելքում առաջնակարգ դեր է խաղում այն եղբայրական, անշահախնդիր օգնությունը, որ ցույց է տալիս հաղթանակած սոցիալիզմի մեծ երկիրը։ Ժողովրդական դեմոկրատիայի երկրներում սոցիալիստական շինարարության պայման հանդիսանալով, այդ օգնությունը Սովետական Միության և ժողովրդական դեմո-



կրատիայի երկրների ժողովուրդների միջև հավիտենական բարեկամության անխախտ հիմք է ծառայում։

Ժողովրդական դեմոկրատիայի երկրների հաջողություններն է՛լ ավելի նշանակալից են ներկայանում այն մռայլ պատկերի ֆոնի վրա, որ իրենցից ներկայացնում են կապիտալիստական աշխարհի երկրները։ Ամբողջ Արևմտյան Եվրոպայում ծավալվում է տնտեսական ծանր ճգնաժամ։ Այդ ճգնաժամն առաջ է մղվում և սրվում «Մարշալի պլանով» և Ատլանտյան պակտով, որոնց նպատակն է ամերիկյան իմպերիալիստների կողմից գաղութացնել Արևմտյան Եվրոպայի երկրները։ Ամերիկայի Միացյալ Նահանգներում, Անգլիայում, Իտալիայում, Ֆրանսիայում և կապիտալիստական մյուս երկրներում օրըօրին աճում է գործազրկությունը, որն արդեն սպառնալի չափեր է ընդունել, աճում է աշխատավորների հարկումը, ամեն տարի իջնում է ռեալ աշխատավարձը։ Գնալով նորանոր միլիոնավոր բանվորներ դատապարտվում են սովի և աղքատության։

Այդպիսի զրկանքներ այժմ կրում են Հարավսլավիայի ժողովուրդները։ Սոցիալիզմի և դեմոկրատիայի լագերից օտարերկրյա կապիտալի և ռեակցիայի լագերը փախած Տի-

տոյի, Կարդելի, Ջիլասի, Ռանկովիչի դավաճանական կլիկը երկրում լիկվիդացրել է ժողովրդա-դեմոկրատական կարգը և հաստատել է ֆաշիստական-դիկտատորական տիպի դաժան, տեռորիստական, հակաժողովրդական ոստիկանական ռեժիմ։

Հարավսլավիայի էկոնոմիկան փակուղու մեջ է մտցված։ Աշխատավորների կենսամակարդակը կատաստրոֆիկ կերպով ընկնում է։ Տիտոյի կլիկը խորտակել է երկրի ժողովրդական տնտեսության վերելքի բոլոր պայմանները։ Երկրում հաստատելով հակաժողովրդական ռեժիմ և կապիտալիստական կարգեր, նա ժողովրդի մեջ սպանել է ստեղծագործական ոգին և նախաձեռնությունը։ Նա Հարավսլավիային մեկուսացրել է Սովետական Միությունից ու ժողովրդական դեմոկրատիայի երկրներից և նրան զրկել այդ երկրների եղբայրական օգնությունից։

Այլ ուղիով են ընթանում ժողովրդական դեմոկրատիայի երկրները։ Նրանց և Սովետական Միության միջև աճում և ամրապնդվում են եղբայրության, բարեկամության, փոխադարձ օգնության կապերը։ Ժողովրդական դեմոկրատիայի երկրների բարեկամությունը և համագործակցությունը Սովետական Միության հետ՝ ամրապնդվում է։



խաղաղության սովետական քաղաքականությունը նրանց պաշտպանում է իմպերիալիստական սպառնալիքներից ու շանտաժից։ Ժողովրդական դեմոկրատիայի երկրներին անծանոթ է ռազմական հիստերիան և նրանք վստահ նայում են իրենց վաղվա օրվան։

Ժողովրդական դեմոկրատիայի երկրները գտնվում են վերելքի ճանապարհին։ Նրանց ժողովուրդները տոգորված են հսկայական խանդավառությամբ։ Նրանք գիտակցում են իրենց ուժը։ Նրանք գիտեն, որ Սովետական Միության հետ համագործակցության, անխախտ ու անսասան համագործակցության, նրա հետ սերտ կապեր ամրապնդելու, փոխադարձ օգնության և իսկական համագործակցության մեջ է ժողովրդական դեմոկրատիայի երկրների հետագա վերելքի ու զարգացման հուսալի երաշխիքը։

Ահա թե ինչու այդ բոլոր երկրներում ժողովուրդները սիրով ընկեր Ստալինին անվանում են իրենց ուսուցիչը, բարեկամը և հայրը։

Ժողովրդական դեմոկրատիայի երկրները պրոլետարական ինտերնացիոնալիզմի մեծ դրոշով ընթանում են առաջ, դեպի նորանոր հաղթանակներ, դեպի սոցիալիզմ։

(«Պրավդայի» օգոստոսի 16-ի առաջնորդողը)

# ՍՍՌՄ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆԸ ԶԱՐԳԱՆՈՒՄ Է ԱՆՇԵՂ ՎԵՐԵԼՔԻ ԳԾՈՎ

Արդեն հրապարակվել է ՍՍՌՄ Մինիստրների Սովետին կից կենտրոնական վիճակագրական վարչության հաղորդագրությունը՝ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման 1949 թվի երկրորդ եռամսյակի պետական պլանի կատարման արդյունքների մասին։ Արդյունաբերության, գյուղատնտեսության, տրանսպորտի, կապիտալ շինարարության զարգացումը, ապրանքաշրջանառության ծավալումը և ժողովրդի կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակի հարաճուն բարելավումը մի անգամ ևս ցույց են տալիս սոցիալիստական սիստեմի առավելությունը կապիտալիստականի նկատմամբ։ Այդ հանրագումարները փայլուն վկայություն են այն բանի, թե ինչպես սովետական երկրի բանվորները, գյուղացիությունը և ինտելիգենցիան բոլշևիկների պարտիայի հմուտ ղեկավարու-



թյամբ, մեծ Ստալինի առաջնորդությամբ, ստեղծագործական աննախընթաց խանդավառությամբ, սոցիալիստական մրցության լայն ու խոր ծավալումով հաջողությամբ գործի են վերածում ետպատերազմյան ստալինյան պլանի վիթխարի նախատեսումները։ Բացի ՍՍՌՄ Անտառային և Թղթի արդյունաբերության, ՍՍՌՄ Զինարդյունաբերության և ՍՍՌՄ Մսեղենի և կաթնեղենի արդյունաբերության մինիստրություններից, մյուս բոլոր մինիստրությունները 1949 թվի երկրորդ եռամսյակի արդյունաբերության համախառն արտադրանքի գծով պլանները կատարեցին մինչև 109 տոկոսով։ Ձեռնարկությունների արտադրական կարողությունների օգտագործումը բարելավելու և ներքին ռեսուրսների մոբիլիզացման գծով կառավարության ձեռնարկած միջոցառումների կապակցությամբ՝ 1949 թվի երկրորդ եռամսյակի համար նախապես սահմանված արդյունաբերական պլանը ավելացվեց։ Շնորհիվ սովետական բանվոր դասակարգի հերոսական ջանքերի, սոցիալիստական մրցության մեթոդների կիրառման, արտադրական կարողությունների լրիվ օգտագործման այդ պլանը ՍՍՌՄ ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքի գծով կատարվել է

101 տոկոսով։ 1949 թվի երկրորդ եռամսյակում պլանից դուրս թողարկվել է զգալի քանակությամբ արդյունաբերական արտադրանք։

Այսպես օրինակ՝ արդյունաբերական արտադրանքի կարևորագույն տեսակների արտադրությունը 1949 թվի երկրորդ եռամսյակում, անցյալ տարվա նույն եռամսյակի համեմատությամբ, աճել է հետևյալ կերպ (տոկոսներով).— չուգուն 120 տոկոսով, պողպատ 127, գլանվածք 130, երկաթուղային ռելսեր 190, երկաթե խողովակներ 136, պղինձ 116, ցինկ 115, ածուխ 113, նավթ 112, էլեկտրաէներգիա 117, մագիստրալային շոգեքարշեր 111, մագիստրալային էլեկտրաքարշեր 230, մագիստրալային ապրանքատար վագոններ 151, տրոլեյբուսներ 163, բեռնատար ավտոմեքենաներ 136, մարդատար ավտոմեքենաներ 223, գնդակավոր առանցքակալներ 125, մետալուրգիական սարքավորում 123, մետաղահատ դազգահներ 119, գործվածքային դազգահներ 160, տրակտորներ 173, հացահատիկային կոմբայններ 200, հանքային պարարտանյութեր 132, սինթետիկ կաուչուկ 135, թուղթ 127, ցեմենտ 131, հեծանիվներ 148, ռադիոընդունիչներ 206, ժամացույցներ 199, բամբա-



կեղեն գործվածքներ 116, վուշեղեն գործվածքներ 122, բրդեղեն գործվածքներ 124, մետաքսեղեն գործվածքներ 134, կաշվե կոշկեղեն 128, միս 115, երշիկեղեն 182, կենդանական յուղ 106, բուսական յուղ 147, խաղողի գինի 127, շամպայն 453 տոկոսով և այլն։

Այսպիսով, ՍՍՌՄ ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքը 1949 թվի երկրորդ եռամսյակում, համեմատած 1948 թվի երկրորդ եռամսյակի հետ, աճել է 20 տոկոսով։

Հայտնի է, որ հետպատերազմյան ստալինյան հնգամյա պլանով սովետական ժողովրդի առաջ խնդիր է դրված. «վերականգնել երկրի տուժած շրջանները, վերականգնել արդյունաբերության և գյուղատնտեսության նախապատերազմյան մակարդակը և այնուհետև զգալի չափով գերազանցել այդ մակարդակը»։ Այդ նպատակով պահանջվում էր ՍՍՌՄ ամբողջ արդյունաբերության մեջ արտադրանքի ծավալը 1950 թվին, նախապատերազմյան 1940 թվի համեմատությամբ, ավելացնել 48 տոկոսով։ Կենտրոնական Վիճակագրական վարչության հաղորդագրությունից երևում է, որ արդեն 1949 թվի հունիսին արդյունաբերության հա-

մախառն արտադրանքի օրական միջին թողարկումը նախապատերազմյան 1940 թվի միջին մակարդակը գերազանցեց 41 տոկոսով: Այսպիսով մեր արդյունաբերությունը այդ գծով ընդհուպ մոտենում է այն մակարդակին, որը սահմանված է հնգամյակի վերջին տարվա համար:

Գերազանց որակի արտադրանք թողարկելու համար արդյունաբերության աշխատողների լայնորեն ծավալած շարժման շնորհիվ բարելավվել է արդյունաբերական արտադրանքի որակը և տեսականին: 1949 թվի առաջին և երկրորդ կիսամյակների համար սահմանված արդյունաբերական արտադրանքի ինքնարժեքի իջեցման պլանը գերակատարվել է:

Գյուղատնտեսության մեջ հաջողությամբ է անցկացվել գարնանացանը: Կոլխոզները, ՄՏ կայանները և սովխոզները ցանքը կատարել են սեղմ ժամկետներում և ապահովել են դաշտային աշխատանքների բարձր որակը. գերակատարվել է գարնանացան կուլտուրաների ցանքի պլանը: 1949 թվի ցանքատարածության աճը կոլխոզներում, սովխոզներում և անհատական գյուղացիական տնտեսություններում նախնական տվյալներով



1948 թվի համեմատությամբ կազմում է մոտ 6 միլիոն հեկտար:

Գյուղատնտեսությունը 1949 թվի առաջին կիսամյակում ստացել է մեկ ու կես անգամ ավելի տրակտորներ և բեռնատար ավտոմեքենաներ, քան 1948 թվի նույն ժամանակամիջոցում, կոմբայններ 74 տոկոսով ավելի, իսկ ինքնագնաց կոմբայններ գրեթե երկու անգամ ավելի, քան 1948 թվի առաջին կիսամյակում: 1949 թվի բերքահավաքի համար գյուղատնտեսությունն ստացել է 22 տոկոսով ավելի շատ խոտհարք մեքենաներ, 31 տոկոսով ավելի շատ հնձող մեքենաներ, 2,3 անգամ ավելի բարդ կալսիչներ և 36 տոկոսով ավելի պարզ կալսիչներ, ինչպես նաև բերքահավաքի շատ այլ գյուղատնտեսական մեքենաներ, քան 1948 թվին:

Այս տարի կոլխոզները, ՄՏ կայանները և սովխոզները ավելի լավ են նախապատրաստվել բերքահավաքին, քան 1948 թվին: ՍՍՌՄ շատ ռեսպուբլիկաներում և մարզերում մեծ հաջողությամբ առաջ է գնում հացահատիկային կուլտուրաների բերքահավաքը: ՍՍՌՄ Մինիստրների Սովետին կից բերքատվության որոշող Պետական գլխավոր տեսչության տվյալներով Ուկրաինայում, Կուբանում և Հյուսիսային Կովկասի

մյուս շրջաններում, փոքր բացառություններով, աճեցվել է հացահատիկային կուլտուրաների լավ բերք։ Երկրի կենտրոնական և արևմտյան շրջաններում սպասվում է հացահատիկային կուլտուրաների լավ բերք, ավելի լավ, քան անցյալ տարի։ Պովոլժիեյի շրջաններում, որտեղ անցյալ տարի երաշտի հետևանքով բերքը ցածր էր, այս տարի ըստացվել է աշնանացան կուլտուրաների լավ բերք, իսկ գարնանացանը գտնվում է բավարար վիճակում։ Ուրալում, Սիբիրում, երկրի մյուս արևելյան և հյուսիսային շրջաններում ցանքերի վիճակը լավ է։

Անասնաբուծության զարգացման եռամյա պլանը հաջողությամբ է կենսագործվում կոլխոզներում և սովխոզներում։ Կոլխոզներում հանրային անասունների գլխաքանակը 1948 թվի հուլիսի 1-ից մինչև 1949 թվի հուլիսի 1-ը ավելացել է՝ խոշոր եղջերավոր անասուններինը 20 տոկոսով, այդ թվում կովերինը 24 տոկոսով, խոզերի գլխաքանակը 79 տոկոսով, ոչխարներինը և այծերինը 11 տոկոսով։ ՍՍՌՄ Սովխոզների մինիստրության սովխոզներում մթերատու անասունների գլխաքանակը 1948 թվի հուլիսի 1-ից մինչև 1949 թվի հուլիսի 1-ը աճել է՝ խոշոր եղջերավոր անասուններինը 16 տոկոսով,



խոզերինը 52 տոկոսով և ոչխարներինն ու այծերինը 17 տոկոսով։

Հաջողությամբ կատարվում են տրանսպորտի պլանները։ Երկաթուղային տրանսպորտում օրական միջին բեռնման ընդհանուր պլանը 1949 թվի երկրորդ եռամսյակում կատարվել է 100,8 տոկոսով։ Երկաթուղիներում բոլոր բեռների օրական միջին բեռնումը 1949 թվի երկրորդ եռամսյակում, 1948 թվի նույն ժամանակամիջոցի համեմատությամբ, աճել է 17 տոկոսով։ Գետային տրանսպորտով բեռների փոխադրումը 1949 թվի 2-րդ եռամսյակում, 1948 թվի երկրորդ եռամսյակի համեմատությամբ, ավելացել է 25 տոկոսով, ընդ որում եռամսյակային պլանը կատարվել է 107 տոկոսով։ Այդ նույն ժամանակի համեմատությամբ բեռների փոխադրումը ծովային տրանսպորտով ավելացել է 12 տոկոսով։

Զգալի աճ է տեղի ունեցել կապիտալ աշխատանքների գծով։ Բոլոր կապիտալ աշխատանքների ծավալը 1949 թվի առաջին կիսամյակում, 1948 թվի առաջին կիսամյակի համեմատությամբ, կազմում է 124 տոկոս։ Բնակարանային շինարարության կապիտալ աշխատանքների ծավալը 1949 թվի առաջին կիսամյակում, 1948 թվի նույն ժամանակա-

միջոցի համեմատությամբ, կազմում է 138 տոկոս։

1949 թվի առաջին կիսամյակում գործողության մեջ են դրվել նոր արտադրական կարողություններ— մետալուրգիական, ածխային, քիմիական արդյունաբերության մեջ, մեքենաշինության, թեթև, սննդի արդյունաբերության և այլ ճյուղերում։

Մասսայական սպառման ապրանքների պետական մանրածախ գները 1949 թվի մարտի 1-ից նորից իջեցվելուց հետո շարունակվեց սովետական առևտրի հետագա ծավալումը։ 1949 թվի երկրորդ եռամսյակում պետական և կոոպերատիվ մանրածախ ապրանքաշրջանառությունը ավելացավ (համադրելի գներով) 19 տոկոսով, 1948 թվի երկրորդ եռամսյակի համեմատությամբ։ 1949 թվի երկրորդ եռամսյակում պարենային ապրանքների վաճառքը, 1948 թվի նույն ժամանակամիջոցի համեմատությամբ, ավելացել է 15 տոկոսով։ Առանձնապես զգալի կերպով աճել է ոչ պարենային ապրանքների վաճառքը։ 1949 թվի երկրորդ եռամսյակում ոչ պարենային ապրանքներ վաճառվել է 27 տոկոս ավելի, քան 1948 թվի երկրորդ եռամսյակում։ Զգալիորեն բարելավվել են սովետական ժողովրդի կյանքի պայմանները։ ՍՍՌՄ



ժողովրդական տնտեսության մեջ բանվորների ու ծառայողների թիվը 1949 թվի երկրորդ եռամսյակում, 1948 թվի երկրորդ եռամսյակի համեմատությամբ, ավելացել է մեկ միլիոն վեց հարյուր հազար մարդով։ 1949 թվի երկրորդ եռամսյակում ֆաբրիկա-գործարանային ուսուցման դպրոցներն ավարտեցին և աշխատանքի ուղարկվեցին 111 հազար երիտասարդ որակյալ բանվորներ։ 1949 թվի երկրորդ եռամսյակում բարձրագույն ուսումնական հաստատություններում, տեխնիկումներում և մյուս մասնագիտական միջնակարգ ուսումնական հաստատություններում պատրաստվում էին մոտ 60 հազար շրջանավարտ մասնագետներ։

***

Հաղորդագրություն է հրապարակված նաև Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության վերականգնման և զարգացման 1949 թվի երկրորդ եռամսյակի պետական պլանի կատարման արդյունքների մասին։ Համաձայն այդ հաղորդագրության Հայկական ՍՍՌ ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքի գծով արտադրության պլանը 1949 թվի երկրորդ եռամսյակում

կատարվել է 102,9 տոկոսով, իսկ այդ պլանի կատարումը 1948 թվի նույն ժամանակամիջոցի համեմատությամբ աճել է 19 տոկոսով։

Գյուղատնտեսական աշխատանքների գծով ռեսպուբլիկայի ՄՏ կայաններն ու կոլխոզները ժամանակին ավարտեցին կոմբայնների, գյուղատնտեսական մեքենաների և ինվենտարի նորոգումը, ինչպես նաև գյուղատնտեսական կուլտուրաների բերքահավաքի նախապատրաստական աշխատանքները։ Այժմ ռեսպուբլիկայի շրջաններում կազմակերպված կերպով ու հաջողությամբ կատարվում են բերքահավաքի և հացամթերումների պլանները։ Ռեսպուբլիկայի կոլխոզները բազմամյա տունկերի տնկման գարնանային պլանը մինչև 1949 թվի հուլիսի 1-ը կատարել են՝ խաղողի այգիների գծով 65 տոկոսով, պտղատու ծառերի գծով 138 տոկոսով և մերձարևադարձային կուլտուրաների գծով 162 տոկոսով։ Անտառապաշտպան գոտիների հիմնման պլանը կոլխոզները կատարել են 144 տոկոսով։ Կապիտալ շինարարության գծով 1949 թվի երկրորդ եռամսյակի պլանը ամբողջությամբ վերցրած ռեսպուբլիկայում կատարվել է 98 տոկոսով։ Այդ աշխատանքների ծավալը ռես-



պուբլիկայի ամբողջ ժողտնտեսության մեջ 1948 թվի երկրորդ եռամսյակի համեմատությամբ կազմում է 147 տոկոս։

Մանրածախ ապրանքաշրջանառության պլանը 1949 թվի երկրորդ եռամսյակում ռեսպուբլիկայում ամբողջությամբ վերցրած կատարվել է 95 տոկոսով։

1949 թվի երկրորդ եռամսյակի արդյունքները վկայում են ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության անշեղ վերելքի և ժողովրդի նյութական ու կուլտուրական կենսամակարդակի բարձրացման գործում ձեռք բերած մեծ հաջողությունների մասին։ Այդ հաջողություններին սովետական ժողովուրդը հասել է բոլշևիկյան պարտիայի և մեծ Ստալինի առաջնորդությամբ։

Յուրաքանչյուր ագիտատորի գործն է լայնորեն մասսայականացնել սովետական ժողովրդի հերոսական աշխատանքի պտուղները, ծանոթացնել նրանց հետ սովետական բոլոր աշխատավորներին, ոգևորել նրանց մեր նվաճումներով, մոբիլիզացնելով նրանց մեր առաջ կանգնած խնդիրները հաջողությամբ կատարելու համար։

—○—

## ՄԱՐԻԱ ՌՈԺՆԵՎԱՅԻ ԵՎ ԼԻԴԻԱ ԿՈՆՈՆԵՆԿՈՅԻ ՕՐԻՆԱԿՈՎ

Լենինականի Տեքստիլ կոմբինատի գործվածքային ֆաբրիկայի ագիտկոլեկտիվում ընդգրկված են 35 ագիտատորներ։ Ագիտացիոն աշխատանքի են ներգրավված ֆաբրիկայի ինժեներա-տեխնիկական աշխատողները, արտադրության առաջավորները, որոնք մոտիկից ծանոթ են արտադրությանը, ամբողջովին տիրապետում են իրենց գործի տեխնիկային և լավ հեղինակություն են վայելում բանվորների մեջ։ Ագիտատորներ առաջադրելով այդպիսի մարդկանց, ֆաբրիկայի պարտիական կազմակերպությունը հասել է այն բանին, որ ագիտացիոն-մասսայական աշխատանքը տարվում է նպատակասլաց կերպով, այն օգնում է ստալինյան նոր հնգամյա պլանով ֆաբրիկայի առաջ դրված խնդիրները լուծելու գործին։ Ֆաբրիկայի ագիտկոլեկտիվի և ագիտատորների ուշադրության կենտրոնում են գտնվում արտադրողականության բարձրացման, արտադրանքի



որակի, բարելավման, հումքի խնայողության հարցերը։

Ագիտկոլեկտիվի սեմինար պարապմունքներին նրա ղեկավար ընկ. Դ. Ղազարյանը յուրաքանչյուր անգամ ագիտատորներին մանրամասն ցուցումներ է տալիս ֆաբրիկայի առաջ կանգնած օրվա հրատապ խնդիրների մասին, այն մասին, թե յուրաքանչյուր ագիտատոր իր տեղամասում ինչպես պետք է մոբիլիզացնի բանվորներին այդ խնդիրների կատարման համար։

Ագիտատորները հնգամյակը ժամկետից շուտ կատարելու մեծ գործին նվիրված ամեն մի նոր շարժում ֆաբրիկայում մասսայականացնելու, այն իրենց մոտ ծավալելու առաջամարտիկներն են հանդիսանում։

Երբ հայտնի դարձավ Կուպավինայի Նուրբ մահուդի ֆաբրիկայի ստախանովականուհիներ Մարիա Ռոժնևայի և Լիդիա Կոնոնենկոյի արժեքավոր նախաձեռնությունը՝ հումքը խնայողաբար օգտագործելու համար, ագիտկոլեկտիվի ղեկավար Դ. Ղազարյանը ագիտկոլեկտիվի սեմինար պարապմունքի քննության հատուկ հարց դարձրեց այն։ Ղազարյանը ագիտատորներին պարզաբանեց, որ Ռոժնևան և Կոնոնենկոն հումքը խնայողաբար ծախսելու գործում լավագույն ցուցա-

նիշների են հասել շնորհիվ այն բանի, որ խելացի ձևով են օգտագործում աշխատանքային ժամանակը, մտածված են ծախսում հումքը, որ նրանց մեքենաները մշտապես գտնվում են լավ սարքավորված վիճակում։

— Ռոժնևայի և Կոնոնենկոյի աշխատանքի մեթոդը մեր ֆաբրիկայում կիրառելը օրվա հարց է դարձել և միանգամայն հնարավոր է,— ասաց այնուհետև ագիտկոլեկտիվի ղեկավարը։ Այսպես օրինակ, Կոնոնենկոն խնամքով ստուգում է միջնաթելը, մաքոքների աշխատանքը, հենքի վիճակը, ժամանակին կանխում է թելի կտրվածքը։ Այս ամենի հետևանքով նա կրկնակի անգամ պակասեցրել է ուգարը, տնտեսելով մանվածքը։ Այս ամենը հաջողությամբ կարելի է կիրառել նաև մեզ մոտ։ Դրա համար անհրաժեշտ է բանվորների հետ խոսել ոչ թե ընդհանրապես հումքի խնայողության մասին, այլ յուրաքանչյուր բանվորի և բանվորուհու պետք է բացատրել, ցույց տալ, թե ինչ թերություններ կան նրա աշխատանքում, ինչու նա հումքը լրիվ չափով չի օգտագործում։ Ուրեմն բանվորների հետ զրուցելուց առաջ պետք է մանրամասն ուսումնասիրել նրանցից յուրաքանչյուրի աշխատանքը։

Այս սեմինար պարապմունքից հետո ա-



գիտատորները ֆաբրիկայում ամենօրյա համառ պայքար ծավալեցին հումքը խնայողաբար օգտագործելու համար։ Իրենց ուշադրությունը կենտրոնացնելով ջուլհակների և ենթավարպետների աշխատանքի վրա, նրանք ի հայտ են բերում հումքը ոչ լրիվ օգտագործելու յուրաքանչյուր դեպք, բացատրում դրա պատճառները, օգնում աշխատողներին՝ այն վերացնելու համար։ Եվ հումքի խնայողաբար ծախսման համար ագիտատորների տարած այդ ծավալուն աշխատանքը տալիս է փայլուն արդյունքներ։

Որպես օրինակ կարելի է վերցնել ֆաբրիկայի այն ցեխը, որտեղ ագիտացիոն-մասսայական աշխատանք է տանում հերթի վարպետ ընկ. Վահան Ղազարյանը։ Իր բազմամյա աշխատանքի փորձով ագիտատոր Ղազարյանը գիտեր, որ հումքը խնայողաբար ծախսելու համար սկսված մասսայական շարժման մեջ ցեխի բոլոր բանվորներին մեկից ներգրավելը հնարավոր չէ, դրա համար անհրաժեշտ է հենց իրենց ցեխում, որպես լավագույն օրինակ առաջ քաշել նախ առանձին բանվորների և ապա նրանց օրինակով շարժման մեջ ներգրավել նաև մյուսներին։ Նա այդպես էլ արեց։ Նրա օգնությամբ և խրախուսանքով Կոնոնենկոյի և Ռոժնևայի

փորձով աշխատելու առաջին նախաձեռնողները եղան ենթավարպետներ Ս. Սերոբյանը, Ն. Ավետիսյանը, ջուլհակներ Ք. Ավետիսյանը, Ա. Բաղդասարյանը, Թ. Ավետիսյանը։ Եվ երբ այդ ենթավարպետներն ու ջուլհակները հումքը խնայողաբար ծախսելու գործում հասան լավագույն արդյունքների, ագիտատորը նրանց աշխատանքի փորձի մասին պատմեց ցեխի մյուս բանվորներին՝ համոզեցուցիչ կերպով ցույց տալով, որ այդպես աշխատել կարող են բոլորը։

Շատ ժամանակ չանցած ագիտատորի եռանդուն և հետևողական աշխատանքը փայլուն արդյունքներ տվեց։ Եթե սկզբնական շրջանում Կոնոնենկոյի և Ռոժնևայի մեթոդով ցեխում աշխատում էին ընդամենը 7 հոգի, ապա այժմ նրանց թիվը հասել է 27-ի և գնալով ավելանում է։

Հումքը խնայողաբար ծախսելու գործին մեծ չափով օգնեց այն հանգամանքը, որ ցեխում կազմակերպվեց տնտհաշվարկ, որով հնարավորություն ստեղծվեց պարզելու, թե յուրաքանչյուր ենթավարպետ և ջուլհակ ինչպես է ծախսում հումքը։

Այս նոր շարժման ծավալման հետևանքով ցեխում զգալի չափով իջել է ուգարը և տնտեսվել մանվածքը։ Միայն հուլիս ամսին



տնտեսած մանվածքից ցեխը լրացուցիչ կերպով տվեց 3.500 մետր գործվածք։

Ֆաբրիկայի ագիտատորները հումքը խնայողաբար ծախսելու համար մղվող պայքարը անխզելիորեն կապում են դազգահների պարապուրդները վերացնելու հարցի հետ, ցույց տալով այդ պարապուրդների պատճառները, թե կոնկրետ ում հանցանքով են առաջանում դրանք։

Ահա այդ հարցին նվիրված ագիտատոր Գ. Դավթյանի անցկացրած մի զրույցը։

— Մեր աշխատանքի ամենանեղ տեղը այժմ դազգահների կարողությունը ոչ լրիվ օգտագործելն է, պարապուրդները։ Վերջին երկու ամիսների՝ մայիսի և հունիսի ընթացքում դազգահների պարապուրդի հետևանքով մեր ֆաբրիկան պակաս է արտադրել 215 հազար մետր գործվածք։ Իսկ մեր ցեխում, հենց միայն ենթավարպետ Ս. Հարությունյանի բրիգադան այդ պատճառով պակաս է տվել 11 հազար մետր գործվածք։ Իսկ ջուլհակուհիներ Ս. Շատունցը և Ֆ. Սարգսյանը այդ ամիսներին յուրաքանչյուրը 1000—1200 մետր պակաս արտադրանք են տվել։ Իսկ ո՞վ պետք է վերացնի այդ պարապուրդները, իհարկե մենք, որովհետև այդ մեր վատ աշխատանքի հետևանքն է։ Իսկ եթե դազգահ-

ները լրիվ չեն օգտագործվում, առաջադրանքները թերակատարվում են, էլ ի՞նչ խոսք կարող է լինել հումքը խնայողաբար ծախսելու մասին։

Այսպիսի զրույցներից հետո հերթի վարպետ ագիտատոր Գ. Դավթյանը օգնում է ենթավարպետներին և ջուլհակներին դազգահների պարապուրդները վերացնելու համար։ Պարապուրդները վերացնելու համար այդպես են պայքարում նաև ֆաբրիկայի մյուս ագիտատորները։ Եվ ահա արդյունքը եղավ այն, որ հուլիս ամսին ֆաբրիկայում դազգահների պարապուրդները կրճատվեց 12 տոկոսով և նրանց արտադրողականությունը հասավ 95 տոկոսի։

Ռոժնևայի և Կոնոնենկոյի ուսանելի փորձով աշխատելու շնորհիվ գործվածքային ֆաբրիկայում անցած ամիսների ընթացքում խնայված է 75 հազար կիլովատ ժամ էլեկտրաէներգիա, 100 հազար ռուբլու օժանդակ նյութեր, տնտեսված է 60 տոննա մանվածք։ Այժմ ֆաբրիկայի ագիտատորները աշխատողների մեջ մասսայական-բացատրական լայն աշխատանք են տանում 400 հազար կիլոգրամ մանվածքի և այլ նյութերի խնայողություն տալու համար։

ՀՐ. ՕՀԱՆՋԱՆՅԱՆ

—○—

# ԱԳԻՏԱՑԻԱՆ ԳԻՇԵՐԱՅԻՆ ՀԵՐԹԱՓՈԽՈՒԹՅՈՒՆՈՒՄ

Մեր ռեսպուբլիկայի մի շարք արդյունաբերական ձեռնարկություններ աշխատում են երկու և երեք հերթափոխությամբ։ Այդ գործարաններում ու ֆաբրիկաներում արտադրական կյանքը գիշերային հերթափոխությունում եռում է այնպես, ինչպես և ցերեկային հերթափոխությունում, բոլոր հերթափոխությունների աշխատողներին տրված են նույն առաջադրանքները։

Այս ամենից հետևում է, որ այդ ձեռնարկությունների պարտիական կազմակերպությունների և ագիտկոլեկտիվների խնդիրը պետք է լինի՝ ագիտացիոն աշխատանք կազմակերպել ոչ միայն ցերեկային, այլև գիշերային հերթափոխությունում։ Գիշերային հերթափոխությունում ագիտացիոն մասսայական աշխատանքը կազմակերպելիս պարտիական կազմակերպությունները և ագիտկոլեկտիվները պետք է

ի նկատի ունենում այդ հերթափոխության առանձնահատկությունները, ամենից առաջ այն հանգամանքը, որ գիշերը բանվորներն աշխատում են առանց ընդմիջման։ Ուրեմն, ելնելով տվյալ արտադրության պայմաններից, այն բանից, թե գիշերային հերթափոխը որ ժամին է սկսում իր աշխատանքը, պետք է կազմակերպել և ագիտացիոն մասսայական աշխատանքը, նրա համար ընտրելով ամենանպատակահարմար ձևը։

Գիշերային հերթափոխությունում ագիտացիոն-մասսայական աշխատանք տանելու ավելի նպատակահարմար ձևը դա անհատական զրույցի ձևն է, երբ ագիտատորը օրվա հրատապ հարցերի վերաբերյալ զրուցում է անհատ բանվորների հետ, լսելով նրանց պահանջներն ու առաջարկները, օգնում նրանց՝ ավելի լավ աշխատելու։

Իսկ եթե ըստ իր աշխատանքի բնույթի ագիտատորն այդ անելու հնարավորություն չունի, նա կարող է իր տեղամասի աշխատողների հետ կազմակերպել կարճատև զրույցներ մինչև աշխատանքն սկսելը, կամ աշխատանքի վերջում, ինչպես այդ հարմար կլինի։

Գիշերային հերթափոխում ագիտացիոն աշխատանքը հաջող է կազմակերպված, օ-



րինակ՝ Երևանի Կիրովի անվան գործարանում։ Այստեղ աշխատանքի պայմաններն այնպես են, որ յուրաքանչյուր հերթափոխ գիշերային հերթում աշխատում է երեք օր և ապա անցնում ցերեկային աշխատանքի։ Եվ, չնայած դրան, այդ երեք օրում էլ բանվորների մեջ շարունակվում է ագիտացիոն-մասսայական աշխատանքը։

Ելնելով այն հանգամանքից, որ գիշերային հերթափոխն իր աշխատանքն ավարտում է առավոտյան ժամը 8-ին, գործարանի պարտկազմակերպության որոշմամբ ագիտատորներն իրենց զրույցներն անց են կացնում աշխատանքից հետո։ Գործարանի պարտիական կազմակերպության ցուցումների, ինչպես նաև ագիտկոլեկտիվում ստացած կոնսուլտացիայի շնորհիվ այդ զրույցները լինում են կարճատև, շոշափում են օրվա ամենահրատապ, անհետաձգելի հարցերը։

Քննության առնելով ընկեր Ստալինին ուղղված Մոսկվայի աշխատավորների նամակը, ուր նրանք պարտավորություն էին վերցրել հնգամյակը կատարել չորս տարում, գործարանի կոլեկտիվը միահամուռ կերպով որոշեց իր հնգամյա պլանը 1950 թվականի արտադրանքի ծավալով կատարել Հայաս-

*տանում սովետական իշխանության հաստատման 29-րդ տարեդարձի օրը՝ նոյեմբերի 29-ին։*

*Գործարանի կոլեկտիվի այս որոշումը յուրաքանչյուր բանվորի սեփականությունը դարձնելու, այն պատիվով կատարելու համար ագիտատորները ագիտացիոն-մասսայական լայն աշխատանք ծավալեցին ոչ միայն ցերեկային, այլև գիշերային հերթափոխությունում։*

*Երբ գործարանի կոլեկտիվը ընդունեց այդ որոշումը 1—8ա ցեխի այն հերթափոխը, որտեղ ագիտատոր է Ն. Թերլեմեզյանը, աշխատում էր գիշերը։ Ագիտատորը հենց նույն օրը աշխատանքից հետո այդ հարցի շուրջը զրույց կազմակերպեց իր ունկնդիրների հետ։ Նախօրոք կատարած հաշվումների հիման վրա ագիտատորը համոզեցուցիչ կերպով բանվորներին բացատրեց, որ իրենց ցեխը, այդ թվում և իրենց հերթափոխը, բոլոր հնարավորություններն ունեն կատարելու վերցրած պարտավորությունը։ Այդ հարցին նվիրված իր զրույցները ագիտատոր Թերլեմեզյանը շարունակեց նաև հաջորդ օրերը։*

*Անցնելով գիշերային աշխատանքի, բանվորների մեջ տարվող՝ այդ հարցին նվիրված ագիտացիան չթուլացրեցին նաև ցեխի մյուս*



*հերթափոխների ագիտատորները։ Եվ ահա շատ ժամանակ չանցած ագիտատորների լավագույն աշխատանքը իր փայլուն արդյունքները տվեց։ 1-8ա ցեխի ագրեգատների արտադրողականությունը 80—85 տոկոսից հասավ 125—130 տոկոսի։*

*Գործարանի կոլեկտիվի վերցրած պարտավորության կատարմանը այլ ուղությամբ մոտեցան 1-8բ ցեխի ագիտատորները։ Ցեխի երեք հերթափոխություններում էլ ագիտատորները բանվորների ուժերը մոբիլիզացրին արտադրանքի որակի բարձրացման՝ որպես այդ ցեխի առաջնահերթ հարցի շուրջը։ Արդյունքը եղավ այն, որ ցեխը այժմ տալիս է միայն բարձր որակի արտադրանք։*

*Արտադրական բարձր կուլտուրա ստեղծելու համար գիշերային հերթափոխությունում լավագույն ագիտացիոն-մասսայական աշխատանք են տանում գործարանի 1—7 ցեխի ագիտատորներ Ս.՝Մխիթարյանը և Մ. Սարգսյանը։*

*Ա. ՓԱՆՈՍՅԱՆ*

ՀԿ(բ) Երևանի Քաղկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի վարիչի տեղակալ։

—О—

## ԳՈՐԾԱՐԱՆԻ ԱԳԻՏՊՈՒՆԿՏԸ

Հինգերորդ տարին է, ինչ գործում է Երևանի Ձեթ-օճառ կոմբինատի ագիտպունկտը։ Այդ մի ընդարձակ, լավ կահավորված, լուսավոր սենյակ է, ուր այցելուն կարող է գտնել պարապելու, իր ցանկացած հարցին լուծում տալու բոլոր պայմանները։ Այստեղ ամեն ինչ՝ և՛ սեղաններին դրված գրքերը, ժուռնալները, թերթերը, բրոշյուրները, և՛ ցուցադրական ագիտացիայի բազմաթիվ ալբոմները, և՛ պատերին փակցված ՀամԿ(բ)Պ համագումարների վերաբերյալ համառոտագրությունները, քարտեզները, դիագրամմաները, պլակատները, նկարները,— ամեն ինչ պատրաստված է ագիտատորների, ինքնուրույն զարգացմամբ զբաղվել ցանկացողների համար։

Ամեն օր ցերեկվա ժամը չորս և կեսին, երբ կոմբինատի առաջին հերթի բանվորներն ավարտում են աշխատանքը, ագիտպունկտի վարիչ ընկ. Սերգեյ Հարությունյանը բաց է անում նրա դռները։ Եվ այդ ժամից մինչև



ուշ երեկո ագիտպունկտը լիքն է մարդկանցով։ Գործարանի պարտիական կազմակերպությունը և նրա քարտուղար ընկ. Գ. Հակոբյանը ագիտպունկտում աշխատանքը կազմակերպել են այնպես, որ այնտեղ գալով ագիտատորը, քաղխմբակի սովորողը, յուրաքանչյուր աշխատող կարողանա պարապել արդյունավետ կերպով, որ նրանց պարապմունքներն ընթանան ճիշտ ուղղությամբ։ Դրա համար ագիտպունկտն ունի իր աշխատանքի պլանը, ուր նշված են զեկուցումների ու դասախոսությունների օրերը, ագիտատորների սեմինար պարապմունքների օրերն ու թեմաները, զանազան մասսայական ձեռնարկումների (գրքերի բարձրաձայն ընթերցանություն, դիսպուտ, հանդիպում գրողների, արվեստագետների, արտադրության անվանի մարդկանց հետ) և այլն։ Ամեն օր ագիտպունկտում լինում են պարտիական բյուրոյի կողմից նշանակված, քաղաքական բարձր պատրաստականություն ունեցող ընկերներ, որոնց ագիտպունկտի այցելուն կարող է դիմել իրեն հետաքրքրող հարցերով։

Ագիտպունկտը դարձել է կոմբինատում ագիտացիոն-մասսայական և հատկապես ցուցադրական ագիտացիայի կազմակերպելու կենտրոնը։ Ագիտպունկտն ստեղծել է իր ակ-

տիվը. դրանք ագիտատորներ են, արտադրության առաջավորներ, նկարողներ, լոզունգներ գրողներ, բարձրաձայն ընթերցողներ, որոնցից յուրաքանչյուրն իր աշխատամասում կատարում է պարտիական կազմակերպության, ագիտկոլեկտիվի հանձնարարությունը, օգնում է ագիտպունկտին ժամանակին արձագանքելու ամեն մի նոր նախաձեռնության, մասսայականացնելու գործարանի առաջավորների փորձը, վեր հանելու նկատված թերությունները, ձևավորելու պատվո տախտակը, առաջավորների ցուցափեղկը և այլն:

Երբ թերթերում հրապարակվեց առաջին հաղորդագրությունը Ալեքսանդր Չուտկիխի հայրենասիրական նախաձեռնության մասին, ագիտատորները դեռևս իրենց ձեռքի տակ ավելի մանրամասն տեղեկություններ չունեին նրա՝ Չուտկիխի աշխատանքի մեթոդների վերաբերյալ, որպեսզի կորողանային այն մասսայականացնել բանվորների մեջ: Բայց ագիտպունկտի ակտիվը չսպասեց, մինչև կհրապարակվեին լրացուցիչ տեղեկությունները: Ակտիվն իր ուժերով խոշոր տառերով գրեց և գործարանի պատերին փակցրեց հետևյալ լոզունգները.

«Կրասնոխոլմի Նուրբ մահուդի կոմբինատի վարպետի օգնական Ալեք-



սանդր Չուտկիխն առաջարկում է տալ միայն բարձր որակի արտադրանք: Այդպես կարող է աշխատել մեր կոմբինատի յուրաքանչյուր բրիգադա. դրա ապացույց են Ճարպայուղի գործարանի բրիգադիր Լյուբա Հովհաննիսյանի և ձեռքի օճառի ցեխի բրիգադիր Ասյա Հայրապետյանի ղեկավարած բրիգադաների օրինակները: Նրանք տալիս են միայն բարձր որակի արտադրանք: Ընկեր բանվորնե՛ր, արձագանքեք Ալեքսանդր Չուտկիխին, աշխատեք նրա, մեր կոմբինատի առաջավորների օրինակով»:

«Արձագանքենք Ալեքսանդր Չուտկիխի առաջարկությանը, կազմակերպենք բարձրորակ արտադրանքի բրիգադաներ» և այլ լոզունգներ:

Կամ ահա մեկ ուրիշ օրինակ ևս:

Մինչև վերջին ժամանակներս կոմբինատի պահեստային տնտեսության աշխատանքներում զգալի թերություններ կային, այնտեղ ոչ բոլոր բանվորներն էին կատարում իրենց առաջադրանքները: Մի օր, գիշերային հերթափոխի աշխատանքի անցնելուց առաջ, ագիտատոր Հովհաննես Ավագյանը նորից խոսեց բանվորների հետ աշխատանքի կազ-

մակերպման, ավելի լավ աշխատելու մասին: Այդ հերթափոխության վերջում ագիտատորը հաշվեց, որ ամբողջ հերթափոխն իր պլանը կատարել է 140 տոկոսով: Ավագյանը իր նախաձեռնությամբ հրատարակեց «կայծակ թերթ» ուր համառոտակի գրեց հերթափոխի ձեռք բերած հաջողության մասին, թվեց առանձնապես աչքի ընկած աշխատողների անունները: Այդ մեծ ոգևորություն առաջացրեց հերթափոխի մեջ: Բայց ագիտատորն այդքանով չբավարարվեց: Նա հաջորդ օրը իր հրատարակած «կայծակ թերթը» բերեց ագիտպունկտ և այն ցույց տվեց ընկերներին: Ագիտպունկտի ակտիվի ուժերով հրատարակվեց նոր, ավելի գեղեցիկ ձևավորված ու բովանդակալից «կայծակ թերթ» և այն փակցվեց աչքի ընկնող տեղում: Պահեստային տնտեսության աշխատողների հաջողությունների մասին իմացան կոմբինատի բոլոր բանվորները: Այդ և հաջորդ օրը լավ աշխատեցին պահեստային տնտեսության բոլոր հերթափոխների բանվորները: Իսկ երրորդ օրը այդ հարցը քննության առավ գործարանի պարտբյուրոն, ուր իրենց աշխատանքի մասին պատմեցին այդ ցեխի մի քանի բանվորներ:

Եվ ահա այս ամենի, ինչպես նաև պարտ-



բյուրոյի և դիրեկցիայի ձեռք առած միջոցառումների շնորհիվ պահեստային տնտեսության աշխատողները սկսեցին սիստեմատիկ կերպով կատարել ու գերակատարել իրենց պլանները:

Ագիտպունկտը լավ է կազմակերպել նաև բանվորների մեջ գեղարվեստական գրականության տարածման գործը: Բավական է ասել, որ ագիտպունկտն ունի ավելի քան 1000 անուն գիրք և 200 մշտական բաժանորդներ: Միայն այս տարվա ընթացքում ագիտպունկտի համար գնված է 6.000 ռուբլու գրականություն: Ագիտպունկտը սերտորեն կապված է քաղաքի գրադարանների հետ և իր ընթերցողների համար այդ գրադարաններից վերցնում է նրանց պահանջած գրքերը:

Ագիտպունկտն իր ակտիվի միջոցով բանվորների համար կազմակերպում է գեղարվեստական գրքերի բարձրաձայն ընթերցանություններ, առանձին ընկերների հանձնարարում է ընթերցել նոր լույս տեսած գրքերը և դրանց մասին զրուցել բանվորների հետ, խորհուրդ տալ կարդալու այդ գրքերը:

Ահա բանվորների մեջ կազմակերպած իր այս լավագույն, օրինակելի աշխատանքի շնորհիվ է, որ Ձեթ-օճառ կոմբինատի ագիտպունկտը դարձել է նրանց սիրելի վայրը:

Լ. ՂԱՐԻԲՅԱՆ

# ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ՀՆԳԱՄՅԱ ՊԼԱՆԻ ԿԵՆՍԱԳՈՐԾՈՒՄԸ

## *ԱՆՏԱՌԱՅԻՆ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ՄԻՆԻՍՏՐՈՒԹՅԱՆ ԳԾՈՎ*

(թվեր և փաստեր)

*Անտառային արդյունաբերությունը մեր ռեսպուբլիկայում լայն ծավալ ստացավ հատկապես ստալինյան նոր հնգամյակում: Այդ զարգացումն ընթանում է երկու ուղղությամբ՝ ավելանում է արտադրական ձեռնարկությունների թիվը և խոշոր չափով մեքենայացվում է աշխատանքային պրոցեսները:*

*Հայաստանի անտառանյութն օգտագործվում է բազմազան նպատակներով: Մինիստրության անտառարդյունաբերության տնտեսությունները ռեսպուբլիկային մատակարարում են վառելափայտ, նրանք արտադրում են շինափայտ, լայն սպառման զանազան առարկաներ: Հայաստանի անտառանյութը մեծ գործածություն է գտնում մեքե-*



*նաշինության մեջ՝ նրանից պատրաստում են կոմբայնների, տեքստիլ արդյունաբերության մեքենաների մասեր, բարձրորակ կահույք, գործածում սայլաշինության մեջ և այլ նպատակների համար:*

*Ստալինյան նոր հնգամյակում անցկացված մեքենայացման շնորհիվ այժմ մինիստրության անտառտնտեսությունները անտառանյութը բաց են թողնում նախնական մշակման ենթարկելուց հետո:*

*Անտառարդյունաբերության հետագա զարգացման համար խոշոր նշանակություն ունի ինչպես անտառահատման, այնպես և անտառանյութի փոխադրման աշխատանքների մեքենայացումը: Անցյալ տարի անտառահատման աշխատանքները մեքենայացման ենթարկվեցին Լամբալուի անտառտնտեսությունում: Այս տարի այդ աշխատանքները մեքենայացման են ենթարկվել Շամշադինի և Իջևանի տնտեսություններում, որտեղ անտառահատումը կըկատարվի էլեկտրական սղոցներով:*

*Անտառանյութը անտառից փոխադրելու համար այս տարվանից կօգտագործվեն թրթուրավոր՝ հատկապես այդ նպատակի համար պատրաստված տրակտորներ: Այսպիսով մեծ չափով կարագանա և կհեշտանա*

անտառանյութի փոխադրումը, կազատվի այդ աշխատանքի համար օգտագործվող կենդանի քաշող ուժը։

Հայաստանում կան անտառներ, որոնք մինչև այժմ չեն օգտագործվում անտառանյութը փոխադրելու համար ճանապարհներ չլինելու պատճառով։ Այդ անտառներում ճանապարհներ կառուցելու նպատակով միայն այս տարի ծախսվելու է կես միլիոն ռուբլի։

Թե նոր հնգամյակում կատարված այս վերակառուցումների շնորհիվ ինչպես է բարձրացել մինիստրության անտառտնտեսությունների արտադրողականությունը, այդ ցայտուն կերպով երևում է Իջևանի տնտեսության օրինակից։ Եթե 1945 թվին այդ տնտեսությունը տվեց 7.500 խորանարդ մետր շինափայտ և 2.000 խորանարդ մետր վառելափայտ, ապա այս տարի նրա արտադրանքը կազմելու է 14 հազար խորանարդ մետր շինափայտ և 6.000 խորանարդ մետր վառելափայտ։

## ՍՂՈՑԱԳՈՐԾԱՐԱՆՆԵՐ

Անտառային արդյունաբերության մինիստրության ցանցում կա երկու սղոցագործարան՝ Իջևանի և Սևքարի սղոցագործարանները, որտեղ աշխատանքների 90 տոկոսը մեքե-



նայացված է։ Այդ գործարանների արտադրած շինափայտը գլխավորապես օգտագործվում է կոմբայնի մասեր, կահույք, տակառներ, պարկետ արտադրելու համար։ Գործարանները տալիս են նաև լայն սպառման զանազան առարկաներ։

Իջևանի անտառանյութը ֆաներա պատրաստելու լավագույն շինանյութ է։ Այդ բազայի հիման վրա Իջևանի գործարանում կառուցված է ֆաներայի արտադրության բաժանմունք, որը վերջերս հանձնվեց շահագործման։ Բաժանմունքն այս տարի տալու է 500 հազար քառակուսի մետր ֆաներա, իսկ եկող տարվանից նրա կարողությունը ավելի կմեծանա։ Այսպիսով մեր ռեսպուբլիկայում հիմք է դրված ֆաներայի արտադրությանը։

## ԿԱՀՈՒՅՔԻ ՖԱԲՐԻԿԱՆԵՐ

Ինչպես Երևանի, այնպես և ռեսպուբլիկայի մյուս քաղաքների ու շրջանների խանութներում լայն կերպով սպառվում են Կիրովի անվան Կահույքի ֆաբրիկայի պատրաստած շիֆոներները, հագուստի և գրապահարանները, կիսափափուկ աթոռները, զանազան տեսակի սեղաններ և այլ կահույք։

Վերջին մի քանի տարվա ընթացքում

ֆաբրիկան ընդարձակվեց, լայնորեն մեքենայացվեցին աշխատանքի պրոցեսները։ Այս ամենի շնորհիվ ֆաբրիկան այս տարի տալու է երեք անգամ ավելի արտադրանք, քան 1940 թվականին։

Կահույքի խոշոր, ամբողջովին մեքենայացված նոր ֆաբրիկա է կառուցվում Երևանի մոտ, Արաբկիրում։ Ֆաբրիկայի առաջին հերթը շահագործման է հանձնվել այս տարի. մինչև տարվա վերջը այն տալու է 600 հազար ռուբլու արտադրանք։ Եկող տարվանից ֆաբրիկան կսկսի արտադրել բնակարանին անհրաժեշտ ամբողջ կահույքի լրիվ կոմպլեկտը։

Ֆաբրիկային կից կառուցվում է խոշոր չորանոց, որը ռեսպուբլիկայի կահույքի արդյունաբերությանը լրիվ չափով կապահովի չոր, բարձրորակ շինափայտով։

## ԹՂԹԻ ՖԱԲՐԻԿԱ

Այս տարի մինիստրության ցանցի մեջ է մտնելու Երևանում կառուցվող թղթի ֆաբրիկան։ Այդ ֆաբրիկայի շինարարությունը լրիվ չափով կավարտվի 1950 թվականից հետո։ Այդպիսով մեր ռեսպուբլիկայում հիմք կդրվի նաև թղթի արդյունաբերության։

—○—

# ԻՆՉ ԿԱՐԴԱԼ

**Ի. ՌՅԱԲՈՎ.** — «Քաղաքական ագիտացիայի փորձը կոլխոզում», — Հայպետհրատ, 1949 թ.։

Սոցիալիստական գյուղատնտեսության հետագա զարգացման, գյուղական աշխատավորների կոմունիստական դաստիարակության համար մղվող պայքարում քաղաքական ագիտացիան հանդիսանում է հզոր զենք։ Մեծ է մասսայական-քաղաքական աշխատանքի ազդեցությունը կոլխոզային գյուղի կյանքի վրա, կոլխոզնիկների գործունեության վրա։ «Ագիտատորի գրադարան»-ի սերիայով լույս տեսած վերոհիշյալ բրոշյուրը նվիրված է գյուղում կատարվող մասսայական-քաղաքական աշխատանքին, գյուղական ագիտատորների աշխատանքի փորձին։

Բրոշյուրում ընդհանրացվում է մեր գյուղական լավագույն ագիտատորների աշխատանքի հարուստ փորձը, նրանց փորձով ու օրինակով ցույց է տրվում թե ինչպես պետք

է կազմակերպել ագիտացիոն-մասսայական աշխատանքը գյուղական բնակչության շրջանում։

Գյուղական ագիտատորների՝ պարտիական կազմակերպությունների այդ մարտական օգնականների կարևորագույն խնդիրն է աշխատավորներին լայնորեն պարզաբանել հետպատերազմյան շրջանում գյուղատնտեսության վերելքի խնդիրները, նրանց կազմակերպել ու պայքարի դուրս բերել այդ խնդիրների կենսագործման համար, ամրապնդել սերտ կապը մասսաների հետ։ Բրոշյուրում հանգամանորեն, կենդանի օրինակներով ցույց է տրված, թե ագիտատորներն ինչպես պետք է կազմակերպեն ու գլխավորեն սոցիալիստական մրցությունը գյուղական աշխատավորների մեջ, մասսայականացնեն բարձր բերքի վարպետների աշխատանքի փորձը, կազմակերպեն պայքարը հանրային սեփականության պահպանման ու ամրապնդման համար։

Ագիտատորները հանդիսանում են Միչուրինի-Լիսենկոյի-Վիլյամսի ուսմունքի, սովետական առաջավոր ագրոնոմիայի բոցաշունչ պրոպագանդիստները։ Անհրաժեշտ է, որ նրանք օգնեն կոլխոզային գյուղացիությանը՝ սովետական առաջավոր գիտության նվաճումները ներդնելու գյուղատնտեսական աշխատանքի պրակտիկայում։



Ագիտատորը նոր գյուղի կառուցման առաջավոր մարտիկն է։ Նա պետք է ավելի հաճախ դիմի գյուղի մարդուն այս խոսքերով։

— Նայիր քո շուրջը, տես, թե ինչ է կատարվում քո գյուղում, ինչպես է փոխվում կյանքը, դեպի ուր է նա գնում։ Համեմատիր ներկան անցյալի հետ։ Նայիր, թե ինչ է արել քո գյուղի համար, քեզ համար սովետական իշխանությունն ու բոլշևիկյան պարտիան, ինչ են տվել կոլխոզային կարգերը։

Գյուղական ագիտատորի հարազատ գործն է ծավալել հակակրոնական պրոպագանդան, օգնել հետամնաց մարդկանց ազատագրվելու հին բեռից, նախապաշարմունքներից և սնահավատություններից։ Ագիտատորի պատվի գործն է կոլխոզային գյուղացիությանը դաստիարակել սովետական հայրենասիրության ոգով, ազգային հպարտության ոգով։

—O—

**ԳԻՆԸ 50 ԿՈՊ.**

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

*Հայպետհրատի հրատարակությամբ լույս են տեսել.*

*Ի. ՍՏԱԼԻՆ.*— Երկեր, 9-րդ հատոր, *1949 թ.։*

*ԱԿԱԴ. ԵՄ. ՅԱՐՈՍԼԱՎՍԿԻ.*— Բոլշևիկների պարտիան օտարերկրյա ռազմական ինտերվենցիայի և քաղաքացիական պատերազմի ժամանակաշրջանում *(1918—1920), 1949 թ., 273 էջ, գինը 8 ռ.։*

*ՊՐՈՖ. Գ. ԱՂԱՋԱՆՅԱՆ.*— Հացահատիկային կուլտուրաների բերքատվության բարձրացման միջոցառումները, *1949 թ., 45 էջ.։*

*Ֆ. Դ. ԲՈՒԲԼԵՆԿՈՎ.*— Երկրագնդի ներքին կառուցվածքը, *1949 թ. 37 էջ, գինը 1 ռ.։*

Գուսանական և ժողովրդական երգեր— *1949 թ., 130 էջ, գինը 6 ռ.։*

Պատասխանատու խմբագիր՝
Հ. ԱՅՎԱԶՅԱՆ

*ՎՖ 03132* *Պատվեր 634* *Տիրաժ 8.100*

*Հայպոլիգրաֆհրատի վարչության № 2 տպարան, Երևան*

Отдел Пропаганды и агитации ЦК КП(б) Армении
БЛОКНОТ АГИТАТОРА
№ 15 1949 г.